## ԳԻՄԱԿՑԱԿԱՆ ԿԵԱՆՔ

### ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ ՍԷՆԹ ԱՆԹՈՒԱՆԻ ՄԷՋ

— :-: —

ՍԷՆԹ ԱՆԹՈՒԱՆ (Մարսէյլ). — Բազմաթիւ ժողովուրդով եւ մեծ յաջողութեամբ տօնուեցաւ «Դաշնակցութեան Օր»ը։

...

Սարգիս Փօլաճեան

## ՌՈՒՍ ՃՈՒՐԺԻ ԹԱՂ. ԸՆՏՐՈՒԹԻՒՆԸ

— :-: —

### ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՑԱՆԿԸ ՇԱՀԵՑԱՒ

Սոֆիա, 23 Հոկտ. (սեփ. թղթ.). — Քանի մը ամիս առաջ, տեղի ունեցած էր Թաղ. խորհուրդի ընտրութիւն։ «Պլօք»ը պարտուած էր։ Լուծեալ Թեմական խորհուրդը 28 մայիսէն առաջ շրջաբերական մը հանեց ու Թաղ. խորհուրդներուն արգիլեց եկեղեցւոյ մէջ տնօրինակատարութիւն ընել։ Որովհետեւ այս կարգադրութիւնը հակազգային էր, Թաղ. խորհուրդը անճկուն թողուց զայն ու տնօրինակատարութիւնը արտօնեց։ Ատոր վրայ, նախկին Թեմականը «ժուռնալ» մը տուաւ պատկան նախարարութեան, ըսելով թէ Թաղ. խորհուրդը «կեղծ դրօշ»ով տոնած ու անսաստած է մեր հրահանգը, եւ, հետեւաբար, պահանջեց լուծել։ Եւ սակայն, մինչ ջանացած էր իր մարդոցմէն եռանդամ մը նշանակել տալ, պատահեցաւ ճիշդ հակառակը։ Կրկին ժողովրդական հոսանքէն եռանդամ մը նշանակուեցաւ։

Այսօր, կիրակի, տեղի ունեցաւ նոր ընտրութիւնը։ Հնչակ, ռամկավար, կեղծ «Հայաստանցի» կամ «չէզոք», — բոլորը ոտքի էին՝ շաբաթներէ ի վեր։ Կոչեր, խոստումներ, բազմաչարչար Հայաստանին շահագործումը, ներգաղթի եւ այլ խոստումներ։ Դաշնակցութիւնը, իր հետ ունենալով յարգուած ու լուրջ հայրենակիցներ, անգամ մըն ալ ցոյց տուաւ իր հասակը։ Ընտրութեան արդիւնքը երբ պարզուեցաւ, խեղճերը սմքեցան արդէն։ Սոֆիայի լուծեալ Թեմականին անդամները հեւ ի հեւ լուրի կը սպասէին, անշուշտ...։

Այս արդիւնքը նկատառելի է անոր համար, որ Պուլկարիոյ մէջ դեռ ներգաղթ կը յաղան ու ոչ – հպատակ հայրենակիցներու քուէներովը կը պայմանաւորեն...

Կարդացէք եւ Տարածեցէք «ՅԱՌԱՋ»ը

## ՄՈՒՍՈԼԻՆԻԻ ՆՇԱՆԱԽՕՍՔԵՐԸ

ՄԻԼԱՆ, 27 Հոկտ. (Սեփ. Թղթ.). — Թորինոյի փառաւոր ընդունելութենէն յետոյ, Միլանոյի ժողովուրդն ալ, աննկարագրելի ցոյցերով ընդունեց «Տուչէ»ն։ Մուսոլինի այստեղ ալ ինչպէս Թորինօ, այցելեց վերջին տարիներուն կառուցուած շէնքերը, դպրոցները, հիւանդանոցները, ...

...

Պ. Մուսոլինի ընդունած է հայ ուսանողութեան պատուիրակութիւնը, որ պարզ անկեղծ խօսքերով, ինչպէս վայել է ուսանողներուն, յայտնած է հայ ուսանողութեան յոյսերը ու համակրանքը։

Ա. Ս.

## ԹՈՒՐՔԻԱ

### "ԵԹԷ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ ՈՒՆԵՆԱՅԻ ՄԷԿ ՕՐՈՒԱՆ ՄԷՋ ԲՈԼՈՐՆ ԱԼ ԿԸ ՓԱԿԷԻ»

Ծանօթ քննադատ-գրագէտ փէյեամի Սէֆա պէյ «ճումհուրիյէթ»ի մէջ խօսելով օտար վարժարաններու մասին կը գրէ.

— Եթէ իշխանութեան տէր ըլլայի, բոլոր օտար վարժարանները մէկ օրուան մէջ կը փակէի։ Որքան ատեն որ անոնք բաց կը մնան, այն հաւատքը ունիմ թէ մեր մէջ տա- ...

...

Մէհմէտ, կամ քրիստոնեայ Խրիսթօ.— երկուքն ալ նոյն աստիճանով թշնամի են Թուրքիային։ (Մէնէմէնի մէջ սպաննուած սպան)։

## ՁԱՅՆԵՐ ԳԱՒԱՌԷՆ

### «ԳՈՅԱՄԱՐՏ» ՕՐԱՑՈՅՑԸ

ԿԱՐՏԱՆ.— Արդէն լոյս տեսած է Հ. Յ. Դ.եան Մարսէյլի Պատանեկան Միութեան «Գոյամարտ» օրացոյցի 1933ի հրատարակութիւնը։ Յիսունը երեք թերթիկներէ բաղկացած այս տարուան օրացոյցը աւելի ճոխ եւ գեղեցիկ տեսք մը ունի։

Հ. Յ. Դ. Պատանեկան Միութիւնը 4րդ տարին է որ լոյս կ՚ընծայէ «Գոյամարտ» օրացոյցը։ Տարուէ տարի աւելի այլազան ու նորագոյն նկարներով եւ պատմական կարեւոր անցքերու ճշգրիտ թուագրութեամբ ...

...

Նոր Տարուան առթիւ յարմար կաղանդչէք մըն է, ազգականներու եւ բարեկամներու ղրկելու համար։ Ամէն Հայ պէտք է ունենայ «Գոյամարտ» օրացոյցը։

Լեւոն Գեղունի

## ՄԱՄՈՒԼ

### «ՀԱՅՐԵՆԻՔ» ԱՄՍԱԳՐԻ ՏԱՍՆԱՄԵԱԿԸ

«Հայրենիք» օրաթերթը կը գրէ այս խորագրով խմբագրականի մը մէջ.

— «Այսօր լոյս տեսաւ «Հայրենիք» ամսագրի 10րդ տարուան 12րդ (Հոկտեմբեր) թիւը, որով կը լրանայ անոր գոյութեան 10րդ տարին։

Գրական այս ձեռնարկը, որուն ...

...

## ՄՈՒՍՈՒԼԻ ՔԱՐԻՒՂԱՏԱՐ ԽՈՂՈՎԱԿԻՆ ՇԻՆՈՒԹԻՒՆԸ

Մուսուլի խողովակին շինութեան համար Անգլիա, Ֆրանսա, Գերմանիա եւ Ամերիկա ապսպրուած անհրաժեշտ նիւթերը, մեծ քանակութեամբ, վերջերս Իրաք հասած են եւ չափերը առնուած են խողովակներու զետեղումին համար որ պիտի սկսի ներկայ ամիսէն եւ պիտի վերջանայ 1934ի յունիսի վերջը, Պաղտատի կառավարութեան եւ Քարիւղի Ընկերութեան միջեւ կնքուած համաձայնութեան պայմանաժամէն վեց ամիս առաջ։

Հայֆայի, Տրիպոլոյ, Հոմսի, Պէնճի, Ռիւթպիի եւ Մաֆրաքի մէջ Ընկերութեան համար անհրաժեշտ շէնքերուն շինութիւնը արդէն վերջացած է։

Գետակներու վրայ զետեղուելիք նիւթերը հասած են Սուրիա եւ Իրաք։

Ամերիկայէն եկած է 5000 թօն զանազան տեսակ խողովակ։

Մնացեալ խողովակները պիտի գնուին Անգլիայէն՝ 33000 թօն, Ֆրանսայէն՝ 49,000 եւ Գերմանիայէն՝ 18 հազար։

Ջուր ստանալու համար Ընկերութիւնը պիտի գործածէ ջրհան մեքենաներ, որոնք պիտի բաժնուին 12 տարբեր կայաններու վրայ։

Բազմաթիւ ջրհորներ պիտի փորուին ճամբաներուն վրայ եւ ջուրը խողովակներով պիտի փոխադրուի աշխատաւորներու բնակութեան կեդրոնները։

Հայֆայի նաւահանգիստի շինութեան անհրաժեշտ նիւթերու հայթայթումը պիտի կատարուի անգլիական, ֆրանսական, գերմանական եւ ամերիկեան պետութիւններուն կողմէ։

ԿԸ ԽՆԴՐՈՒԻ յօդուածագիրներէ եւ թղթակիցներէ իրենց գրութիւնները գրել թուղթին մէկ երեսին վրայ եւ

ԳՐԵԼ ԿԱՐԵԼԻ ԵՂԱԾԻՆ ՉԱՓ ՄԱՔՈՒՐ, քանի որ մեծ մասամբ տողաշարով կը շարուի ՅԱՌԱՋը։

ԿԸ ԽՆԴՐՈՒԻ ՉԶԳՁԳԵԼ ԲԱԺՆԵԳԻՆՆԵՐՈՒ ՎՃԱՐՈՒՄԸ

«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (35)

## ԱՐԵ՛Ւ, ԱՐԵ՛Ւ...

...

ՓԱՅԼԱԿ ՄԻՔԱՅԵԼԵԱՆ

(Շարունակելի)

Imp. A. DER (Agopian)

**17, Rue Damesme, Paris (13)**

***Le Gérant H. STEPHAN***



«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (1)

# ԵՍ ԼՐՏԵՍ ՄԸՆ ԷԻ

ԽՄԲ. — **Martha Mckenna**, որ հիմակ անգլիացի սպայի մը տիկինն է, աղջիկութեան անունով կը կոչուէր **Martha Cnockaert**, Պելճիքացի օրիորդ մը, որ պատերազմի ընթացքին Պելճիքայի մէջ ծառայեց որպէս հիւանդապահուհի գերման հիւանդանոցի մը մէջ՝ եւ միաժամանակ որպէս լրտես Համաձայնական բանակներուն։

Գերմանները զինք պատուեցին Երկաթ Խաչ պատուանշանով. Սըր Տըկլըս Հէյկի կողմէ պաշտօնական յիշատակութեան արժանացաւ եւ ֆրանսական ու պելժ կառավարութիւններէն Պատուոյ Լեգէոն ստացաւ։

Գերմանացիները երբ անոր լրտես ըլլալը իմացան, զինք դատապարտեցին մահուան, յետոյ այս վճիռը վերածեցին ցկեանս բանտարկութեան։

×

*— Աստուած ղրկեց ձեզ, — ըսաւ մայրապետներուն մեծաւորը, երբ իրեն յայտնեցին թէ վարժ հիւանդապահուհի մըն եմ։*

*Մեր շուրջը կային մարդիկ՝ բաց վէրքերով, մարդիկ առանց բազուկի, առանց սրունքի, կոյրեր վեր վար կը նետուէին անկողիններուն, նստարաններուն եւ տախտակամածին վրայ, երբ երկու գերման սպասաւորներ եւ բժիշկ մը կ'անցնէին անոնց մէջէն, անհամբերօրէն յոգնաբեկ աչքերով։*

1914 *տարուան օգոստոս ամսուն էր եւ ես՝ Մարթա Քնօքքէրդ, Ուէսթրուզպէք գիւղէն պելճիքացի աղջիկ մը, կամովին ինքզինքս տրամադրեցի մեր գիւղի մայրապետներուն, որոնք գիւղին ամենամեծ տունը նախնական հիւանդանոցի վերածեր էին։*

*Ատկէ քանի մը շաբաթ առաջ պատահածներու մասին պաշտօնական փաստաթուղթերը — անհաւատալի դէպքերու չոր ժամանակագրութեամբ — աւելի համոզիչ կերպով կրնան բացատրել։*

*Գիւղի քահանան իր իսկ գերեզմանը փորել տալով անոր մէջը անձնասպան եղաւ... Կին մը բարձր պատուհանէն ինքզինքը վար նետեց... Ծեբեր՝ պատին կեցած, կարգով սպաննուեցան... Ասոնք այն քանի մը սոսկալի դէպքերն են միայն՝ որոնց ականատես եղայ, երբ 1914 օգոստոսի օրերուն գերման զօրքը մեր գիւղը թափեցաւ։*

*Բայց ի՞նչ հարկ խօսիլ այստեղ այն բաներու մասին զորս ես տեսայ։ Աբար աշխարհ գիտէ անոնք, եւ այս օրերուս անոնց վերյիշումը «բարեկամական» չի նկատուիր։*

*Բաւականանանք, ուրեմն, վեր հանել անմոռանալի պատկերին միւս կողմը. — այն որ Գերմանները ցոյց տուին պատերազմի սկիզբի օրերուն, կատաղած ու տենդագին յուզումէ մը յետոյ։*

*Մեր գիւղը այդ միջոցներուն կրակի գծին ետեւ բժշկական խաղաղ կայանի մը վերածուած էր։ Շատ յաճախ բըժիշկի պարտականութիւն ալ կը կատարէի. — սահուն գերմաներէն ալ կը խօսէի. — ու երբ իմացայ որ մայրապետները հիւանդանոց մը բացած են, ուր կը խնամեն թէ գերման վիրաւորներ եւ թէ Համաձայնականներուն վիրաւոր գերիները՝ գացի եւ հոն ծառայելու պատրաստակամութիւնս յայտնեցի։*

*Այդ հիւանդանոցին մէջ ինձ հանդէպ այնպիսի ակնածանքով կը վերաբերուէին որ 1915 յունուարին, երբ պատերազմին ընթացքը առժամապէս նպաստաւոր դարձաւ Համաձայնականներուն՝ ու երբ ռումբերն սկսան պայթիլ մինչեւ այդ ժամանակ խաղաղ մեր գիւղին վրայ, հիւանդանոցի հրամանատարը զիս իր մօտ կանչելով ըսաւ.*

*— Օրիորդ, այս վայրը այլ եւս շատ վտանգաւոր դարձաւ, կրակի գիծէն հեռու, Ռուլըրս պիտի փոխադրուինք. դուք հոս գնահատելի գործ կատարեցիք եւ ուստի մեզ հետ պիտի գաք։*

*Ու գացի Ռուլըրս հինաւուրց գիւղաքաղաքը։ Վեց մղոն հեռաւորութիւնը ի՜նչ տարբերութիւն կրնար ունեցած ըլլալ։*

*Եկած էի արիւնի, աւերի ու ծխացող քանդումի մթնոլորտէ մը դէպ ի հիւրընկալ վայր մը, որուն առիքաւոր տուները իրենց անեղծ պայծառութիւնով, կազդուրիչ խաղաղութեան մը օդը կը պարգեւէին։*

*Գօլէճին բարձր ու գորշ շէնքերուն վրայ կը ծածանէր գերման հիւանդանոցին Կարմիր Խաչի դրօշակը, որուն ես յանձնուած էի։*

*Խաղաղութեան մասին խօսեցայ... մինչդեռ նոյն այդ խաղաղիկ Ռուլըրսի մէջ էր որ սկսայ այնպիսի արկածալից քայլեր առնել որ, նոյն իսկ հիմա, գիշերները կ'արթնցնեմ այդ ահաւոր տարիներու սոսկալի մղձաւանջներով։*

*Տասնըհինգ օրի չափ հետեւեցայ հիւանդանոցի սովորական կանոններուն որոնք ծանօթ են 1932ի այս խաղաղ օրերու որ եւ է հիւանդապահուհիի։ Աշխարհի ո՛ր մասին վրայ ալ ըլլայ հիւանդանոցը նոյնն է. այնպէս որ տասնըհինգ օր ամբողջ օգնեցի գերման բժիշկներուն, խնամելով ծանր վիրաւորները — Գերման, Անգլիացի եւ Ֆրանսացի, — որոնք նախկին գօլէճը կը բերուէին։*

*Հայրս ու մայրս կրցած էին ինձ հետ միասին Ռուլըրս գալ եւ կը բնակէին հիւանդանոցին մօտ տունի մը մէջ, պելճիքացի ընտանիքի մը հետ։*

1915 *յունուարին գիշերային պարտականութիւնս կատարելէ վերջ, առտու մը ժամը 7ին ծնողքիս այցելութեան գացի։*

*Մօրս հետ խոհանոցին մէջ խօսակցած միջոցիս՝ յանկարծ դուռը ճռնչեց եւ դաստակը սկսաւ դառնալ, մեր աչքերը դէպ ի դուռը ուղղուեցան։ Մուտքին մէջ կեցած էր Լիւսէլ Տէլտօնք, կին մը զոր կը ճանչնայի այն. քանդուած գիւղէն ուրկէ փախած էինք։ Սպիտակ մազերը խառն ի խուռն կախուած, դէմքը յոգնութենէն մեռելատիպ։ Իր լռութեան նշան մատը շրթունքներուն տարաւ. մայրս աթոռ մը մօտեցուց։*

*Ան կամաց ձայնով մը սկսաւ.*

*— Ոչ ոք պէտք է իմանայ իմ հոս գալս. ձեզ գտնելու համար շատ դժուարութիւն քաշեցի եւ եթէ ձեր առանձին ըլլալը խոհանոցի պատուհանէն չտեսնէի, ներս չպիտի մտնէի։*

*— Բայց ո՞ւրկից կուգաս, Լիւսէլ։*

*— Սահմանին միւս կողմէն կուգամ եւ ձեզի տալիք լուրեր ունիմ։ Մտիկ ըրէք։ Միջին տարիքով կին մըն եմ. անցած տարի խորհեցայ կեանքիս մնացեալ օրերը խաղաղ ու երջանիկ անցընել։ Բայց ձեզի հիմա ըսեմ որ Հոլանտայէն հոս քառասուն եւ աւելի մղոն եմ քալեր եւ տակաւին տասը մղոն ալ պիտի քալեմ։ Եթէ Գերմանացիներն իմանան որ ես հոս եմ...*

Թարգմ. *Ա. ՀԱՐԻԼԵԱՆ*

(Շարունակելի)

## Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆ

### Փարիզ եւ արուարձաններ

Հ.Յ.Դ. ԱՆԻԷՐ Գուաճողոնպի առժամեայ մարմինը ժողովի կը հրաւիրէ Արամ, Մուրատ եւ Մասիս խումբերը այսօր Կիրակի իրիկուն ժամը 8.30ին, 11 rue Descartes, Asnières. Օրակարգ՝ զեկոյց պատգամաւորիկողմէ։

## ԵՐԵԿՈՅԹ – ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Տարօն-Տուրուբերանի Հայրենակցական Միութեան կողմէ

19 Նոյեմբեր Շաբաթ գիշեր ժամը 8.30էն մինչեւ առաւօտ

ՄԻՒԹԻՒԱԼԻԹԷԻ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ

Կը Նախագահէ՝ Պ. ՊԵՏՐՈՍ ՎԱՐԴԱՆԵԱՆ

Կը խօսին՝ Պ. Պ. ՀՐԱՉ ԵՐՈՒԱՆԴ եւ ՍԵԴՐԱԿ ՍԱՍՈՒՆՆԻ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին Պ. Ա. Շահմուրատեան (երգ), Տիկին Սուրաբեան (երգ), Գալմանով (դաշնակ), կ'արտասանեն՝ Պ. Ջարեհ Ղարիպեան եւ Օր. Տէր Թովմասեան։ Կը նուագէ «Եփրատ» նուագախումբը։

Կէս գիշերէ յետոյ հայկական եւ եւրոպական պարեր

Տոմսերու գիները 7.50 եւ 5 ֆրանք

Տոմսերը կը ծախուին «Յառաջ»ի խմբագրատունը, գրատուն Հրանտ Սամուէլ, Պետրոս Վարդանեան, 24bis rue Blanqui, Լեւոն Տօնիկեան, 52 rue Isidore Neujahr, Bagneux (Seine)։



## ՑԵՐԵԿՈՅԹ

Ի ՆՊԱՍՏ ԶՕՐ. ԱՆԴՐԱՆԻԿԻ ՅՈՒՇԱՐՁԱՆԻ ՇԻՆՈՒԹԵԱՆ

20 Նոյ. Կիրակի կէսօրէ վերջ ժամը ճիշդ 2.30ին

Սալ Միւթիւալիթէի մէջ, 24 rue Saint Victor

Կը ներկայացուի ԱՆԴՐԱՆԻԿ ֆիլմը գեղարուեստական ճոխ բաժինով



ՏԻԿ. Ժ. ՇԱՀ-ՊԱՐՈՆԵԱՆ

## ՕՓԷՐԷԹԱՅԻՆ ՑԵՐԵԿՈՅԹ

Théâtre Renée Maubel — 8 rue de l'Orient, Paris (18) Métro: Blanche & Abbesses

Այսօր Կիրակի ցերեկ ժամը 2.45ին

ՎԱՀԱՆ ՓԱՓԱԶԵԱՆԻ (Լիլա)

### ՄԷԿ ՔՍԱԿ – ՉՈՐՍ ՊՍԱԿ

Նոր եւ եւրոպական ոճով հայկական օփերէթը 3 արար

Երաժշտութիւն՝ ԺՈՐԺ ՇԱՀ ՊԱՐՈՆԵԱՆԻ

Ոտանաւորներ՝ ԳՐԻԳՈՐ-ՎԱՀԱՆ (ՃԳՆԱՒՈՐ)

Մասնակցութեամբ փարիզահայ ամենալաւագոյն ուժերու

Մեծ երգչախումբ — եւրոպական օրքէսթրը

Գիները՝ 25, 15, 10 եւ 7.50 ֆրանք

### Ազդ

Փարիզի Հայոց եկեղեցւոյ կրօնական ընկերակցութեան եկեղեցաշէն յանձնաժողովը կը ծանուցանէ յարգոյ հասարակութեան թէ՝ Արնուվիլլէ-կոնէսի նորակառոյց եկեղեցւոյ օծումը պիտի կատարուի այսօր կիրակի, նախագահութեամբ Տ. Վռ. եպիսկ. Քիպարեան սրբազանի եւ մասնակցութեամբ քահանայից դասուն։ Սկզբնաւորութիւն ժամերգութեան ժամը 9ին, սկզբնաւորութիւն պատարագի ժամը 10ին։

Ի դիմաց Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ Հոգաբարձութեան։

(կնիք)



### Թատերական ներկայացում Լիոնի մէջ

17 Դեկտ. Շաբաթ իրիկուն ժամը 8.45ին Emile Zola սրահին մէջ Ղեկավարութեամբ երգչուհի-դերասանուհի ՏԻԿ. Ե. ԲԱԴԱԼԻ

Կը ներկայացուի Աշուղ Ջիվանիի ԱՇՈՒՂ ՂԱՐԻԲԸ

Նոյն խաղը ՏԷՍԻՆԻ մէջ Դեկտ. 18ին, Կիրակի ցերեկ ժամը 3ին Հ. Յ. Դ. ՏԱՆ ՄԷՋ։



## ՆԱՍՐԷՏՏԻՆ ՀՕՃԱՆ ՓԱՐԻԶ ԵԿԱՒ ԱՄԵՐԻԿԱՅԷՆ



ՆԱՍՐԷՏՏԻՆ ՀՕՃԱ

Պատրաստուեցէք դեկտ. 11ին իր նոր ծանօթանալու

Mutualité-ի շքեղ սրահին մէջ



## ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԴԱՍԸՆԹԱՑՔ

### ԱՐԱՅ ՊԱՐԹԵՒԵԱՆԻ

փարիզի պետական երաժշտանոցէն եւ Schola Cantorumէ

Տարրական եւ բարձրագոյն դասընթացք երաժշտական տեսական եւ գործնական ճիւղերու։

Դաշնակի, ձայնագրութեան (Solfège) եւ ներդաշնակութեան (harmonie)

Ըստ Փարիզի բարձրագոյն երաժշտանոցներու ծրագրին եւ նորագոյն մեթոտներու։

Դասաւանդութիւնք տեղի կ'ունենան մասնաւոր ժամադրութեամբ

Դիմել 35bis Rue de la Varenne (St. Maur)



### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէն ընկեր ՄԿՐՏԻՉ ՄԻԼՏՈՆԵԱՆԻ դառնաղէտ մահուան առթիւ ցաւակցութիւն կը յայտնէ ընկ. Ս. Միլտոնեանի եւ Միլտոնեան ընտանիքին։

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Համբարձում Նահապետեան կը փնտռէ իր եղբայրը Պրուսայի Եէնիճէ գիւղացի Գրիգոր Նահապետեան, որ կորսնցուցած է տեղահանութեան միջոցին, հօր անունը՝ Վարդերես, մօր անունը Վարդենի, մեծ եղբօր անունը՝ Մարտիրոս, քոյրերը՝ Խեխնա եւ Էլպեկ։ Իմացնել Համբարձում Պուռնազեանի, Chez Mr. E. de Micheaux, à Flaviac, Ardèche, France։ Ճշգրիտ լուր տուողին նուէր։

— Կը փնտռուի Էսկիշէհիրցի Զիւմրիւթ Տէտէեան, հօր անունը՝ Մատթէոս, մօր անունը՝ Մարի (ծընեալ Էպիւշիմեան)։ Զիւմրիւթ ամուսնացած է եւ կը գտնուի Մարսէյլ։ Իր ամուսնոյն անունը եւ մականունը անծանօթ։ Իր հայցէն փնտռողներէն կը խնդրուի իմացնել իր մօրեղբօր Արթին Էպիւշիմեանի (Էսկիշէհիրցի), 54 rue de la Mare, Փարիզ (20)։



Imp. A. DER (Agopian)
17, Rue Damesme, Paris (13)
Le Gérant H. STEPHAN

# Ց. Փարիզ եւ շրջակաները



Դ. ՊԼԵՒՈՆԻ «Մասիս» խումբի ժողովը վաղը, Երկուշաբթի երեկոյ, ժամը 9ին սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ: Անդամներու ներկայութիւնը ՊԱՐՏԱԴԻՐ է:

## Գաւառ

Հ. Յ. Դ. Լիոնի Մարմինը ստիպողաբար ընդհ. ժողովի կը հրաւիրէ Լիոնի Քրիստափոր, Զաւարեան, Ռոստոմ խումբերու բոլոր ընկերները այսօր կիրակի առաւօտ ժամը 9ին, ծանօթ հաւաքավայրը: Ներկայանալ անդամատետրով: Խիստ կարեւոր օրակարգ: Ներկայ կ'ըլլայ Կ. Կ.Ի ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉԸ:

## ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋ. ԿՈՄԻՏԷԻ ԺՈՂՈՎՆԵՐԸ

ՄԱՐՍԷՅԼ.— Աղբիւր-Սերոբ եւ Իշխան ենթակոմիտէներու հաւաքական ժողովը տեղի կ'ունենայ այսօր, կիրակի կէս օրէ վերջ ժամը 3ին, սովորական հաւաքատեղին:

ԼԱ ՍԻՕԹԱ.— Խաժակ խումբի ընկերական ժողովը տեղի կ'ունենայ այսօր, կիրակի կէս օրէ վերջ, ժամը 2.30ին: Կը դասախօսէ՝ ընկեր Ա. Մարտիրոսեան, զեկոյց 10րդ Շրջ. ժողովի:

■■■■■■■■

ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. Պատանեկան Միութեան ընդհ. ժողովը վաղը, երկուշաբթի, երեկոյեան ժամը 8.30ին մեր նոր Գրադարան-ընթերցարանի մէջ, 49 բիւ Նասիոնալ: Կարեւոր օրակարգ: Ներկայանալ անդամատետրներով:

ՏԷՍԻՆԻ կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այսօր կիրակի իրիկուն ժամը 7.30ին Հ. Յ. Դ. Տան մէջ: Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն: Ներկայ կ'ըլլայ Կ. Կ.Ի ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉԸ:

ՏԷՍԻՆԻ Հ. Յ. Դ. Պատանեկան Միութեան անդամական ընդհ. ժողովը, վաղը, երկուշաբթի, երեկոյեան ժամը ճիշտ 8ին, Հ. Յ. Դ. ժողովրդային տան ներքնայարկը: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Կարեւոր օրակարգ: Կը հրաւիրուի նաեւ Տէսինի կոմիտէի ներկայացուցիչը:



## ՇՆՈՐՀԱԿԱԼՈՒԹԻՒՆ

Հ. Յ. Դ. Տէսինի Կոմիտէն եւ իր շրջանի բոլոր ընկերները շնորհակալութիւն կը յայտնեն ամէն անոնց, որոնք նիւթապէս եւ բարոյապէս օժանդակեցին Հ. Յ. Դ. Տան շինութեան, ինչպէս նաեւ անոնց որոնք շէնքի շինութեան մէջ աշխատեցան ձրի:

Շնորհակալութիւն նաեւ բոլոր ընկերներու եւ հայրենակիցներու, որոնք մօտաւոր եւ հեռաւոր վայրերէ փութացած էին ներկայ ըլլալու Հ. Յ. Դ. Տան բացման հանդէսին:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Սիրանուշ Արծրունեան, Օր. Վարդանուշ Արծրունեան եւ պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն ամէն անոնց որոնք անձամբ կամ գրաւոր ցաւակցութիւն յայտնեցին ՄԻՆԱՍ ԱՐԾՐՈՒՆԵԱՆԻ զառնաղէտ մահուան առթիւ:




Imprimerie A. DER (AGOPIAN)

17, Rue Damesme :-: PARIS (13e)

Le Gérant : H. STEPHAN






Ա. ՇԱՀԽԱԹՈՒՆԻ

# ՁԱՅՆԵՐ ԳԱՒԱՌԷՆ

## ՄԵՐ ԱՐՀԵՍՏԱՒՈՐՆԵՐՆ ՈՒ ԱՌԵՒՏՐԱԿԱՆՆԵՐԸ

—)(•)(—

Վիէն, 26 նոյ. (Յառաջ). — «Յառաջ»ի «Ձայներ Գաւառէն» բաժինը կարելի է համարել ֆրանսահայ կեանքի հայելին, եր բոլոր կողմերով։ Անոր շնորհիւ կարելի է օրը օրին ծանօթանալ բոլոր քաղաքներու ու գիւղերու մէջ գտնուած ցանուցիր հայութեան կեանքին եւ գործերուն, ազգային եւ կուսակցական կեանքին, կրթական, առեւտրական կացութեան։ Հոգ չէ թէ մարդ երբեք բնակած կամ գտնուած չըլլայ այդ վայրերուն մէջ։

Վիէնի հայ գաղութը, որ սկսած է հաստատուիլ 1922ին, ստուարացած է մասնաւորապէս 1923—24էն վերջ։ Այսօր մեր գաղութին թիւը կը հասնի 1100—1200ի։ Ոմանք այս թիւը կը բարձրացնեն մինչեւ 1500ի, բայց, ըստ իս, չափազանցութիւն է, Շասը միասին հաշուելով, (Վիէնէն 9 քիլոմեդր) կարելի է հաշուել — մօտաւոր թիւ մը — 365 ընտանիք, 40ը Շասս, իսկ մնացածը Վիէն քաղաքին եւ եր-

ունին, որուն պէտք է գիտողութիւն ընել, այն է իրենց խանութները կոկիկ չեն կրնար պահել հակառակ որ 5—6 տարի է որ կը շարունակեն ոմանք։ Պէտք է Ֆրանսացիներուն պէս մենք ալ մեր խանութները կոկիկ եւ մաքուր պահենք։ Իսկ կան կարգ մը հայ յաճախորդներ, դիտողութիւն մըն ալ անոնց, այն է, որ նպարավաճառատունը արճարանի կը նմանցնենք, ժամերով այնտեղ նստելով։ Այս ալ գէշ սովորութիւն է, պէտք է վերջ տալ այս արեւելեան ախտին։

Ունինք 11 սափրիչներ, վեցը՝ իրենց սեփական գործերն ունին խանութներով, երկուքը Փոնթ Էվէքի մէջ, երկուքը Էսարէզէնի, եւ 2ը քաղաքին մէջ։ Իսկ մնացած 5ը Ֆրանսացի սափրիչներու քով վարձու աշխատաւորներ են, որոնք շաբաթական կը ստանան 180—200 Ֆր.։ Սեփական գործ ունեցողներն ալ գէշ չեն, իրենց ընտանիքին ապրուստը կրնան ճարել։

Ունինք նաեւ 2 սրճարան Փոնթ Էվէքի շրջանին մէջ, եւ 1 սրճարան – ճաշարան Էսարէզէնի շրջանին մէջ։ 1 մըսավաճառ եւ 1 ապուխտ պատրաստող նոյնպէս Փոնթ Էվէքի մէջ։ Մսավաճառը այս վերջերս Լիոնէն եկած եւ

բուն պարբերաբար տուած ներկայացումները կը յուսանք թէ մեծ դեր պիտի խաղան գաղութիս մէջ, թէեւ տեղւոյս երիտասարդութիւնը հոգիով փարած է դէպի հայ մշակոյթը, սակայն տնտեսական տագնապին տուած անյուսալի հարուածը գրեթէ շշմեցուցած է ամէնքը։ Բայց անոնք արհամարհելով բոլոր տեսակի դժուարութիւնները, ջանք չեն խնայեր բոլոր այն ձեռնարկներու յաջողութեան, իբրեւ սրբազան պարտականութիւն։ Այն ինչ որ կը կատարուի ներկայ դժնդակ պայմաններուն տակ կարելի չէ չգնահատել։

Հարգաւցի

## ԼՈՆՏՈՆԻ ՀԱՅ ԿՌՓԱՄԱՐՏԻԿԻՆ ՆՈՐ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆՆԵՐԸ

■■■

ԼՈՆՏՈՆ, 26 նոյ. (Յառաջ). — Ղուկաս Միքայէլեան Nick Lucas պարսկահայ կռփամարտիկը յաղթող դուրս եկաւ դարձեալ իր վերջին մրցումին մէջ որ տեղի ունեցաւ անցեալ օր, Plymouthի մէջ, 6000 հոգինոց բազմութեան մը առջեւ։

## ՄԱՄՈՒԼ

### Ցումաստանի տագնապը

— :-: —

Սելանիկի «Հորիզոն»ը կը բացատրէ խմբագրականի մը մէջ (20 նոյ.)·

— «Այսօր, աւելի քան ուրիշ որ եւ է ժամանակ պարզ է որ, Ցումաստանի ելմտական – գանձային կացութիւնը յուսահատօրէն տագնապալի է։ Կառավարութիւնը, ծայր աստիճան ապերախտ ժառանգութիւն մը ստացաւ իր նախորդէն։ Պետութիւնը խեղդըւած է պարտքերու յորձանքին մէջ եւ դժուար կը շնչէ։ Իսկ չնչառութիւնը բոլորովին պիտի կասի, եթէ երբեք գանձին մէջ մնացած եւ ժողովուրդի հացին ու անունդին համար բացարձակօրէն անհրաժեշտ եղող քիչ մը շանժն ալ սպառի, պարտքերու վճարումներուն յատկացնելով։ Եւ սակայն, Ցումաստան չպիտի կրնայ գործել պարտքերու կանոնաւոր եւ նոյն իսկ մասնակի վճարման յիմարութիւնը։ Զպիտի կրնայ գործել, որովհետեւ չուզեր ինքնասպան ըլլալ։ Որովհետեւ չուզեր, վաղը միւս օր, մէկ առերլինի կամ նոյն իսկ մէկ տոլարի համար հա- [illegible]

## Ծիլ ու Խաւիճ

[illegible]

## Փարիզի

### ԱՂՔԱՏԱԽՆԱՄ ՏԱԳՆԱՊԸ

[illegible]

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

### Մուշի մը աղբի

[illegible]

Կարդացէ՛ք եւ Տարածեցէ՛ք «ՑԱՌԱՋ»ը

## ՍՒՍԱԴ

### ՀԱՅԸ ԻՐ ՏՈՒՆ ԶԱՒԿԻՆ

[illegible]

Ս. ՔԱՐՈՒԹ



# ՃԱՆՃԱՆ ԱՐՈՒԹ

— :-: —

[illegible]

ԼԵՒՈՆ ՖԵՆԵՐԵԱՆ

## ՍՒՍԱԴ

[illegible]

